## ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

»»»» • • ««««

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Տէսինի «Քրիստափոր», «Ռոստոմ» եւ «Զաւարեան» խումբերու կողմէ եւ հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. ՏԷՍԻՆԻ ԿՈՄԻՏԷԻ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին Հ. Յ. ԴԱՇ. ՏԱՆ ՄԷՋ*

*Կը նախագահէ ընկեր Վ. ՁՈՒԼԷՐԵԱՆ*

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ **Ռ. ՄԻՍԱՔԵԱՆ**

Կը նուագէ ընկ. ՔԸՐԸՔՕՃԵԱՆ իր նագով:

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.*—Օր. Մ. Տէր Պետրոսեան (*մեներգ*) եւ Տէսինի «ԱՐԾԻՒ» ֆանֆառ խումբը ղեկավարութեամբ Պ. Ժ. Խթիկեանի, արտասանութիւն, երգ, եւն.: *Մուտք 2 ֆրանք:*

Հանդէսէն վերջ ընկերահաւաքական խնջոյք երեկոյեան ժամը 8էն մինչեւ 1:

### ՓՕՆԹԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ *ՄՈՒՐԱՏ* խումբի, մասնակցութեամբ *ԱՆԴՐԱՆԻԿ* խումբի եւ հովանաւորութեամբ *ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ:*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ*

Կը խօսի՝ Ընկերուհի ՔԻՊՐԻԹՃԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԱՌԱՒՕՏ ԺԱՄԸ* 9.30ին **Cinema Palace** *ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

Կը խօսի՝ Ա. ԽԱՏԻՍԵԱՆ

գեղարուեստական ճոխ բաժին:

Տալնքերու մասնակցութեան համար մուտք 2 ֆրանք:

### ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՕԻ ՄԷՋ

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ*

Հովանաւորութեամբ *Մարսէյլի Շրջ. Կոմիտէի*, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. *Պուլվար Օտտօի «Վռամեան» Ենթակոմիտէի* եւ մասնակցութեամբ *Պատ. Միութեան եւ Քառթիէ տը Քարթի «Ուտօ» խումբի:*

*Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Պար Վէնսանի մէջ*

Կը խօսի՝ Ընկ. Ա. ՃԱՄԱԼԵԱՆ

Մանրամասնութիւնները առանձին յայտագրով:

### ՍԷՆ ԼՈՒ, ԿՐԱՆ ՓԷՆ (ՄԱՐՍԷՅԼ)

*Այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 5ին*

*120 Շըմէն տը լա Մատրակ վիլ*

Կը խօսի՝ Ընկ. Ա. ՃԱՄԱԼԵԱՆ

Մանրամասնութիւնները առանձին յայտագրով:

### ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ԸՆԿԵՐ ԿԱՐՕ ԽՈՒՄԲԻ*

9 *ՅՈՒՆԻՍ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ* 8.30էն *մինչեւ առաւօտ*

La Viste l'Ermitage*ի չքեղ սրահին մէջ*

Կը խօսի՝ ընկ. ԱՐՇԱԿ ՃԱՄԱԼԵԱՆ

Տալնքերու մասնակցութեան համար 3 ֆրանք: Եօթը տարեկանէն վեր փոքրիկներու համար 1 ֆրանք:

### ԻՍԻԼԷՄՈՒԼԻՆՈՅԻ ՄԷՋ

*ՅՈՒՆԻՍ 9ին, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ*

Կը նախագահէ՝ ընկ. ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ

Կը խօսի ընկերուհի՝ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ




Le Gérant: **H. STEPHAN**

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13e)






## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Փարիզի կոմիտէի վիճաբանական դասախօսութիւնը տեղի կ'ունենամ վաղը երկուշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, Au Clair de Lune սրճարանի վերնայարկը, փլաս տ'Իթալի:

*«Կովկասեան Դաշնակցութեան»* մասին թեր ու դէմ պիտի խօսին ընկերներ՝ *ԱՐՓԻԱՐ ԱՐՍԼԱՆԵԱՆ* եւ *Ա. ՄՈՒՐԱՏԵԱՆ*:

Կը հրաւիրուին բոլոր ընկերները:

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ «ԱՐԾԻՒ» ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ*

Այսօր կիրակի առաւօտէն մինչեւ իրիկուան ժամը 9

*Պ. Կ. ԿԱՐԻՆԵԱՆ*ի օդասուն պարտէզին մէջ

Նուագ, երգ, արտասանութիւն եւ անակնկալներ:

Կը ներկայացուի «ՀՆԱՐԱՄԻՏ ՎԱՐՁԱԿԱԼԸ» (զաւեշտ)

Դիւրամատչելի պիւֆէ: Տալնքերու մասնակցութեան համար 3 ֆր.

Հաղորդ. միջոց.— *Առնել Փորթ տ'Օրլէանէն 88 հանրակառքը եւ իջնել Պանեէօ, ուր առաջնորդներ պիտի սպասեն:*

## ՑԵՐԵԿՈՅԹ — ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*ՖՐԱՆՍԱՀԱՅ Կ. ԽԱՉԻ ԱՅՖՈՐՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին

Սեւրի Մուրատեան վարժարանի Պէշիկթաշլեան սրահին մէջ

26, Rue Troyon (Métro: Pont de Sèvres)

*Կը խօսի՝ ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ*

Կը ներկայացուի Մ. Տէր Մինասեանի «ԺԱՌԱՆԳՈՐԴԸ» սիրողներու կողմէ, *«ԿՕՇԿԱԿԱՐ ՀԱՄԲԱՐԵԱՆ»* (զաւեշտ) դպրոցի աշակերտներու կողմէ:

Մուտք՝ 7, 5 *եւ* 3 *ֆրանք:*

## ՑԵՐԵԿՈՅԹ - ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած՝* ՓԱՐԻԶԻ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

ՏԵՂԻ ՊԻՏԻ ՈՒՆԵՆԱՅ ԿԻՐԱԿԻ ՕՐ, 15 ՅՈՒԼԻՍԻՆ

*ԺԱՄԸ 2էն ՄԻՆՉԵՒ ԵՐԵԿՈՅ*

*ՄՈՒՐԱՏ-ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺ.Ի ԸՆԴԱՐՁԱԿ ՓԱՐՔԻՆ ՄԷՋ*

***26, Rue de Troyon, Sèvres.***

Գեղարուեստական խնամեալ բաժին, մասնակցութեամբ հայ եւ օտար անուանի արուեստագէտներու:

*Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով:*

*Մուտք՝* 10 *ֆրանք եւ* 5 *ֆրանք տղայոց:*

*Հաղորդակց. միջոցներ.— Թրամուէյ թիւ 1, եւ մէթրօ՝ Pont de Sèvres.*

## ՏԱՐԵԿԱՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

# ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

1ին ՅՈՒՆԻՍ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ **Salle GAVEAU**ի ՄԷՋ

Կը մասնակցին *Օր. ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐԵԱՆ (դաշնակ)*: (Փարիզի պետական կոնսերվատորիայէն):

**Mr Lucien QUATTROCCHI** (Ա. ջութակ Փարիզի Օբերայէն):

*ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ ԾԱՆՕԹ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԷ*

*Տոմսերը կը վաճառուին ծանօթ վայրերը եւ* **Salle Gaveau***ի մէջ:*

Մանրամասնութիւնները մօտ օրէն:

**ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ** տեղի պիտի ունենայ *ՅՈՒԼԻՍ* 29ին:

*Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:*

## ՀՐԱՉ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ

## «ՄԵՐ ԿԵԱՆՔԸ»

ՎԷՊ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԵԱՆՔԷ

Գին *15* ֆրանք, փոստի ծախքով, միայն կանխիկ, Ֆրանսա՝ *16* ֆր.

Արտասահման՝ *17* ֆրանք:

Դիմել.— H. Zartarian, 126, Ave. Simon Bolivar, Paris (19):

Կը ծախուի նաեւ *ՅԱՌԱՋ*ի խմբագրատունը:

LE PREMIER QUOTIDIEN ARMÉNIEN EN EUROPE

# ՅԱՌԱՋ

# HARATCH

(Fondé en 1925)

Directeur et Propriétaire : Sch. Missakian
Rédaction & Administration
ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ եւ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

17, Rue Damesme PARIS (13e)
Téléphone: Glacière 15-70

ՕՐԱԹԵՐԹ՝ ԱԶԳԱՅԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ

ՈՒՐԲԱԹ 15 ՅՈՒՆԻՍ
VENDREDI 15 Juin 1934

| ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ | ՏԱՐԵԿԱՆ | ՎԵՑԱՄՍԵԱՅ | ԵՌԱՄՍԵԱՅ |
| --- | --- | --- | --- |
| Ֆրանսա եւ գաղութներ | 140 ֆրանք | 70 ֆրանք | 35 ֆր. |
| Անգլիա, Եգիպտոս, Զուիցերիա, Իտալիա | 250 » | 130 » | — |
| Ամերիկա | 200 » | 100 » | — |
| Այլ երկիրներ | 200 ֆրանք | 100 ֆրանք | — |

10ՐԴ ՏԱՐԻ - 10e Année N° 2522

Խմբագիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

ԳԻՆ 50 ՍԱՆԹԻՄ

ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## ՇՈՂՈՔՈՒՄՆԵՐ՝ ՄՈՍԿՈՒԱՅԷՆ ԸՆԿԻՒՐԻ

Թուրք մամուլը փորձեց հերքել այն տեղեկութիւնները թէ գաղտնի բանակցութիւններ կատարուած են Նիփոնի (Ճափոն) հետ, Կովկասի եւ ուրիշ քաղաքական հարցերու մասին։

Մեր ընթերցողներուն ծանօթ է խնդիրը։

Համաձայն Լոնտոնի «Փըպլիք Լէճըր» թերթին քաղած տեղեկութեանց, Նիփոն առաջարկած է Թուրքիոյ՝ գործակցիլ իրեն, ռուսեւճափոնական պատերազմի պարագային, կատարելով աւ-գատութիւն վայելելով Կովկասի մէջ։

Միեւնոյն ատեն, անգամ մը եւս կը հաստատուէր թէ՝ Խ. Միութիւնը գաղտնի դաշնագրով մը Թուրքիոյ պիտի յանձնէ Կովկասի ապահովութեան հոգը, եթէ ինք պատերազմի բռնուած ըլլայ ուրիշ ճակատներու վրայ։

Այս տեղեկութիւնները արտատպուեցան ոչ միայն օտար թերթերու, այլ եւ Մոսկուայի կուսակցական պաշտօնաթերթին՝ «Փրավտա»յի մէջ, ինչ որ զարմանք պատճառեց Թուրքերուն։

Այդ առթիւ էր որ, Թրքական մամուլը փորձեց հերքումներ կարկտել։

[illegible]

Ճ.

# ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

## ՖՐԱՆՍԱՅԻ ԱՐՏԱԿԱՐԳ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

»»»· ·«««

### ԵՐԵՍՓ· ԺՈՂՈՎԸ ՍԿՍԱՒ ՔՆՆԵԼ ՆՈՐ ՎԱՐԿԵՐԸ

Երեսփ. ժողովը երէկ սկսաւ քննել կառավարութեան առաջարկները՝ զինուորական վարկերու մասին։ Ինչպէս կը յիշուի, կառավարութիւնը 3,120,00,000 ֆրանքի բացառիկ վարկ մը պահանջած է։ Այս պահանջը ընդունուեցաւ եւմբ-տական յանձնաժողովին կողմէ։

Պահանջուած վարկերէն 1,275,000,000 ֆրանք պիտի յատկացուի բանակին։ Այս գումարով, յառաջիկայ ձմեռէն առաջ պիտի աւարտին արեւելեան սահմանագլուխի ամրութիւնները եւ պիտի շինուին «վտանգի միջնաբերդեր», բուն ամրութեանց ետին, ի հարկին անմիջապէս օգնական ուժ հասցնելու համար։ Միեւնոյն ատեն պիտի ամրացուին կարգ մը կէտեր որոնք անկատար մնացած էին 1929էն ի վեր։ 600,000,000 ֆրանք պիտի յատկացուի նաւատորմին, ծովեզերեայ ամրութեանց եւ վառելանիւթի կայաններու շինութեան համար։ 80 միլիոն պիտի ծախսուի ծովեզերեայ պաշտպանութեան միջոցները բարելաւելու, իսկ 150 միլիոն՝ ծովային օդանաւորդութիւնը կատարելագործելու համար։ Միեւնոյն ատեն 40 միլիոն ֆրանք պիտի յատկացուի օդանաւային կազմածներ գնելու եւ կայանները արդիական նորութիւններով օժտելու համար։ [illegible]

### Թրքական օդեւս մը ի պատիւ Պարսից շահին

[illegible]

### Հիւղօ-Մուսոլինի տեսակցութիւնը

ՄԻՆՉ ՀԵՏԱՔՐՔՐՈՒԹԻՒՆԸ ԱՄԷՆ ԿՈՂՄ

[illegible]

### «Դժոխին դաստառները», ուսմ մը պայթեցուցին

[illegible]

### Նոր խառնակութիւններ Սուրիոյ մէջ

[illegible]

»»»· ·«««

[illegible]

## ՕՐԸ ՕՐԻՆ

« ԱՐԻՔ ՀԱՅԿԱԶՈՒՆՔ »

եւ

ՄԱՅԻՍ 28

»»»· ·«««

Մայիս 24ին լրացաւ Թուրքիոյ Հայոց Ազգ· Սահմանադրութեան 73րդ տարեդարձը։

Այս առթիւ, սրտառո՛ւչ խմբագրական մը շարադրած է Ամերիկայի ռամկավարներուն պաշտօնաթերթը։ Նոյն իսկ երկու հատ։

Փառաբանելով ազգ· սահմանադրութեան տարեդարձը, ռամկավար օրկանը կը պատմէ թէ՝ Օսմ· կառավարութիւնը, սուլթանականէն մինչեւ իթթիհատականը, միշտ ծուռ նայեցաւ մեր ազգային ինքնավարութեան։

— « Ապտիւլ Համիտ, լաւ կռահելով Սահմանադրութեան նշանակութիւնը եւ գիտնալով որ Հայեր անոր տարեդարձը կը կատարեն ոչ թէ Պատրիարքարանի յատուկ կանոնագրի մը հաստատութիւնը յիշատակելու, այլ իրենց Ազգային Վերածնութիւնը եւ յոյսերը ողջունելու համար, ուրիշ խստութիւններու կարգին խափանեց՝ Սահմանադրութեան ոչ միայն տարեդարձները, այլ նաեւ գործադրութիւնը »։ (Պայքար, 25 մայիս)։

Ռամկավար օրկանը յատկապէս, շեղագիր տառերով կը բացատրէ թէ՝ Ազգ· Սահմանադրութիւնը հիմնուած էր « ռամկավար ազատական » սկզբունքներու վրայ։

Միեւնոյն ատեն կը պատմէ թէ՝ Սահմանադրութեան հիմնադիրներն ու վարիչները, շատ խելացի մարդիկ էին·

— « Անոնք դաստակերտային պայքար, Ամիրաներու եւ արհեստաւորներու միջեւ կռիւ ալ չարծարծեցին, ազատամիտ Ամիրաներու խումբ մը բոլոր սրտով այժ տուաւ իրենց »։

Գիտէի՞ք։ Բայց աւելի կարեւոր պարագայ մը·

— « Այդ շարժումին շատ պատշաճ եւ յատկանշական անուն մը տրուեցաւ իր ժամանակին — « լուսաւորեալ »ի եւ « խաւարեալ »ի պայքար եւ անոր յաղթանակը եղաւ ԱԶԳՈՒԹԵԱՆ գաղափարին տիրապետութիւնը հայկական բոլոր հաստատութեանց ու ձեռնարկներու մէջ, որ իր բնական զարգացումով յանգեցաւ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ »։ (Գլխագիրները իրենք չարած են)։

Կը տեսնէք որ Ռամկավարները այնքան ալ « պէխապէր » չեն պատմութենէն։

Անո՛նք ալ կ'ըմբռնեն «անցած_գացած բաներ »ու արժէքը։ Նոյնիսկ ներշնչումներ կ'ունենան։

Այս առթիւ, կը փորձուիմ հարցնել·

— Եթէ Ազգ· Սահմանադրութիւնը յաղթանակն էր ազգութեան գաղափարին, որ « իր բնական զարգացումով յանգեցաւ հայ ազատագրական շարժման », ի՞նչ էր 1918 մայիս 28ը։

Եւ եթէ բոլորս այնքան սրտանց կը սիրէինք Ազգ· Սահմանադրութիւնը, տօնելով, ներշնչուելով եւ « Արիք Հայկազունք »ը թնդացնելով հակառակ սուլթանական եւ իթթիհատական բռնութեանց, ինչու, այսօր, բաժնուած ենք երկուքի, ազատագրական շարժման երկրորդ հանգրուանին — պետականութեան — տարեդարձին առթիւ որ կը կոչուի Մայիս 28···

ՎԱՀԷ

### Նոր ցոյցեր Հալէպի եւ Անտիոքի մէջ

Պէյրութի թերթերը կը գրեն թէ անցեալ շաբթու նոր ցոյցեր եղած են Հալէպի մէջ եւ շուկաները փակ մնացած։ Նամակի համար մեծ մզկիթ հաւաքուած բազմութիւնը թափօր կազմելով, սկսեր է յառաջանալ դէպի Պալ էլ [illegible]

[illegible]

### Ճափոնի գաղտնի բանակցութիւնները Գերմանիոյ եւ Թուրքիոյ հետ

[illegible]

### Սահմանային խնդիրներ Սուրիոյ եւ Թուրքիոյ միջեւ

[illegible]

բութեան մը եւ ուրիշ մեծ ընկերութեան մը: (Այս վերջինը բանուեցաւ Նամակատան մէջ): Գիտական քննութենէն կ'երեւայ թէ ռումբերը կը պարունակեն տեսակ մը փառօդ որ գիւրաւ կրնայ չինուիլ որ եւ է տունի մէջ, հետեւելով տարրաբանութեան սովորական գրքի մը: Փառօդը զետեղուած է խողովակի մը մէջ եւ կը պայթի թելի մը միջոցաւ, երբ ծրարը բացուի: Առ այժմ շատ վտանգաւոր չէ փառօդը, բայց ոստիկանութիւնը կը վախնայ որ խելագար զաւազիրը (կամ զաւազիրները) հետզհետէ աւելի կատարելագործեն եւ խըկայէս վտանգաւոր ռումբեր ղրկեն հասցէներու: Ծրարները նամակատուն կը ձգուին Փարիզի զանազան փողոցներուն մէջ: Հասցէին ձեռագիրը շատ խրթին է:

## Գարսից Շահը Թուրքիոյ մէջ

Տրապիզոն հասաւ հինգշաբթի օր, եւ անմիջապէս «Եավուզ» յածանաւը նստելով, գնաց Սամսոն, ուղեկցութեամբ թրքական տորփիղին: Դիմաւորելու գացած էր արտաքին նախարարը: Արդէն Էնկիւրի հասած է:

կենք հինգով եւ կ'ունենանք նիւթական ձգձիմ արդիւնքն ալ:

Այսպէ՞ս պիտի վարձատրենք մեր դատին ու ցաւին նուիրուողները:

Թուրքը ունեցաւ իր Ալֆէն խոնկ հանրմները: Եթէ մենք դեռ չկրցանք պատրաստել լեզուագէտ հայ կին՝ մեր դատն ու ցաւը ճանչցող Եւրոպային եւ Ամերիկային, գոնէ գիտնանք օգտուիլ այդ գետնին վրայ պատրաստուած օտար ուժերէն:

Կը հարցնեմ «Կովկասի նախկին պատերազմիկներու միութեան վարչութեան», պիտի ուզէ՞ք փրկել ձեր արժանապատուութիւնը, այդ օգտաշատ դասախօսութիւնը կրկնել տալով լաւ կազմակերպութեամբ մը հաւաքուած հոծ բազմութեան մը առջեւ: Այս միայն կրնայ դարմանել եղած խայտառակութիւնը:

ՄԱՆՈՒԿ ՔԻՊԱՐԵԱՆ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻ երրորդ վիճաբանական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ վաղը Երկուշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, Au Clair de Lune սրճարանի վերնայարկը, Փլաս տ'Իթալի:

«Կովկասեան Դաշնակցութեան» մասին տեղի պիտի ունենայ մտքերու թեր ու դէմ փոխանակութիւն:

Կը հրաւիրուին Փարիզի եւ արուարձաններու բոլոր ընկերները:

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած՝ ՓԱՐԻԶԻ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ, ՄԷՕՏՕՆԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ, ՊԱՂ ԱՂԲԻՒՐԻՆ ՄՕՏ

Կը նախագահէ՝ ընկ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Կը խօսի ընկ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ

Ճոխ պիւֆէ՝ ժողովրդական գիներով: Երգ. Պար, Նուագ:

Կը նուագէ Թառիստ Գ. Յովհաննէսեան:

Հաղորդ. միջոց.— Փորթ Վէրսայլէն առնել 23 եւ 32 թիւ հանրակառքերը եւ իջնել Ցէյմ տը Մուլինօ: Էնվալիտէն շոգեկառք եւ իջնել Կառ տը Մէօտօն: Մէթրօ Mairie d'Issyի քով թաքսիներ կան, որ 3 ֆրանքով չիտակ դաշտահանդէսի վայրը կ'առաջնորդեն:





## ՖԱՔԻՐ ԹԱՀՐԱ ՊԷՅ

Ներկայացումներու նոր շարք մը սկսած է տալ՝

ՖՕԼԻ ՎԱԿՐԱՄ (35, Ave. Wagram) թատրոնին մէջ, Յունիս 15էն մինչեւ 21 Յունիս Հինգշաբթի գիշեր:

Պիտի կատարէ թելագրական, մագնիսական և քարացման հետաքրքրական փորձեր եւ

ՈՂՋ ՈՂՋ ՊԻՏԻ ԹԱՂՈՒԻ






MAX-MAXUDIAN

## Théâtre de L'ATELIER

**Place Dancourt — Métro: Anvers & Pigalle**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԸՆՏԻՐ ՁԵՌՆԱՐԿ ՄԸ

ԼԵՒՈՆ ՅԱՐՈՒԹԻ կողմէ

Այսօր Կիրակի, 17 Յունիս 1934, ժամը ճիշդ 3ին եւ երեկոյեան ժամը 9ին

կը ներկայացուի՝ ԳԱՄԷԼԻԱԶԱՐԴ ՏԻԿԻՆԸ

Մասնակցութեամբ՝ Մ. ՄԱՔՍՈՒՏԵԱՆԻ

ֆրանսական բեմերու եւ ֆիլմերու յայտնի հայ աստղը, առաջին անգամ ըլլալով՝ հայ հասարակութեան առջեւ կը խաղայ «Ժորժ Տիւվալ»ի դերը. ԳԱՄԷԼԻԱԶԱՐԴ ՏԻԿԻՆը փիէսին մէջ, զոր սքանչելիօրէն ստեղծագործած է ՍԱՌԱ ՊԷՌՆԱՐԻ կողքին:

ԱԲԻՍՈՂՈՄ ԱՂԱ Յ. ՊԱՐՈՆԵԱՆԻ

Երեւանի պետ. թատրոնի խաղացանկէն, կատակ. 3 արար:

ՍԻՐՈՅ ՋՈՀԸ ցուցիչ տրամ մէկ արար:

ԳԻՆԵՐԸ.— Լօժեր 25 ֆրանք, օրքէսթրը 20 եւ 15, պալքօն 15 եւ 10, կալըրի 5 ֆրանք: Տոմսերը կը ծախուին ներկայացման օրը թատրոնի կիչէն:

Ժողովուրդի խնդրանօք

ՑԵՐԵԿ եւ ԳԻՇԵՐ

ԺԱՄԸ 3ԻՆ ԺԱՄԸ 9ԻՆ



Le Gérant: H. STEPHAN 17, Rue Damesme, PARIS (13e)

Այն զօրեղ հաւատքն ունինք որ, այս նոր մթնոլորտին եւ նոր շրջանին զարգացման ընթացքին, տնտեսապէս ալ երկու երկիրները շատ պիտի օգտուին:

Ամէն բանէ առաջ յայտնեմ թէ մեր ազգերը իտէալի տեսակէտով մօտ են իրարու եւ նոյն շրջանը կը բոլորեն: Թուրք ազգը որ ազգային մեծ պայքարէ մը դուրս եկաւ, կատարելապէս կը գնահատէ մեծութիւնը եւ ազնուականութիւնը այն ջանքերուն զորս կը թափէ նոր Իրանը, տիրացած իր անկախութեան եւ կամքին: Անկէ վերջ, երկու երկիրներու ամէնէն բուռն փափաքն է իրականացնել գիտութեան եւ քաղաքակրթութեան բոլոր յառաջդիմութիւնները, ուժեղ եւ անկախ պետութեան վիճակով: Անկէ զատ, կը տեսնենք որ մտաւորական եւ իտէալական գետնի վրայ ալ շատ մօտիկութիւն եւ նմանութիւն կայ երկու երկիրներու կեանքին եւ ձգտումներուն միջեւ:

Ընկերներ, իրաւունք ունինք յուսալու որ այս բոլոր յարաբերութիւնները միջազգային աշխարհի մէջ շատ լուրջ գնահատանքի արժանանան, որովհետեւ բոլոր ասոնք կը հետապնդեն նպատակ մը որ է ծառայել մարդկային ազնուական զգացումներու, ազնուական գաղափարներու, ինչպէս նաեւ միայն խաղաղութեան մէջ ապահովել մեր ազգերուն բարգաւաճումը: Նոր Իրանի եւ նոր Թուրքիոյ յարաբերութիւնները խաղաղութեան տեսակէտով բարերար նկատուելու են ոչ միայն մեր երկիրներուն, այլեւ մօտաւոր եւ հեռաւոր բոլոր հարեւաններուն համար:

»»»· ·«««

*ՆԱԽԿԻՆ ՎԱՐՉԱՊԵՏ Պ. ՇՈԹԱՆ ամբողջ վեց ժամ հարցաքննուեցաւ խորհրդարանական քննիչ յանձնաժողովին առջեւ, եւ բողոքելով իր մասին եղած գրպարտութեանց դէմ, կրկին եւ կրկին չեշտեց թէ ոչ կը ճանչնար Սթավիցքին, ոչ ալ որ եւ է յարաբերութիւն ունեցած է անոր հետ: Այս առթիւ մատնանշեց Ֆրանսայի վարչական եւ դատական կազմակերպութեան թերութիւնները:*

*ՀՈՒՆԳԱՐԻՈՅ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻՆ ՄԷՋ, արհիդուքս Եոզէֆ ուժգնօրէն բողոքեց Ֆրանսայի եւ Ռումանիոյ արտաքին նախարարներու վերջին յայտարարութեանց դէմ, եւ պնդեց թէ Թրանսիլվանիան հունգարական հող է, որուն համար մէկ տարի կռուած է ինքն ալ, յաղթականօրէն:*

*ԳԵՐՄԱՆԻՈՅ ՎՃԱՐՈՒՄՆԵՐՈՒ ԴԱԴԱՐՄԱՆ առթիւ, ֆրանսական կառավարութիւնը մինչեւ յուլիս 1 պայմանաժամ պիտի տայ: Եթէ Գերմանիա եւ չառնէ մորաթորիոմը, ֆրանսական կառավարութիւնը խիստ միջոցներու պիտի ձեռնարկէ, իր պահանջներուն տոկոսները գանձելու համար: Անգլիական կառավարութիւնն ալ այս իմաստով օրինագիծ մը յանձնեց խորհրդարանին:*

*Պ. ՄԱՔՏՕՆԸԼՏի աչքերու տկարութիւնը սաստկացած ըլլալով, բժիշկները պատուիրած են երեք ամիս հանգիստ ընել: Փոխ-վարչապետութիւնը պիտի վարէ Պ. Պօլտուին: Ուրեմն, Պ. Պառթուի տեսակցութիւնն ալ տեղի պիտի ունենայ Պօլտուինի եւ ոչ թէ Մաքտօնըլտի հետ:*

*ԻՏԱԼԻԱ ԵՒ ՖՐԱՆՍԱ միասին պիտի տօնեն Սոլֆերինոյի 75ամեակը, այսօր, 24 յունիս: (1859): Այս առթիւ մասնաւոր հրաւէր ուղղած է Պ. Մուսոլինի: Ֆրանսական պատուիրակութիւն մը Հռոմ պիտի երթայ, զօրավարի մը նախագահութեամբ եւ մեծ ցոյցեր պիտի կատարուին:*

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶԻ «ԵԳԻՊՏԱՑԻ» ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները յառաջիկայ Երեքշաբթի, ժամը 8.30ին, Au Clair de Lune սրճարանի վերնայարկը:*

*Օրակարգ*՝ Շրջանային ժողովի օրակարգերու քննութիւն:

## ՑԵՐԵԿՈՅԹ
### ՄԱՅԻՍ 28Ի ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ

կազմակերպուած

*Հ. Յ. Դ. «ԱՐՂՈՒԹԵԱՆ» ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ*

*Հովանաւորութեամբ ԶԱԽԱՐԵԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ*

Այսօր կիրակի ցերեկ ժամը *2.30*ին

Շավիլ, *Salle Patin*ի մէջ, *114 Grande Rue*

*Կը խօսին՝ ընկ. Շ. ՄԻՍԱՔԵԱՆ եւ ընկերուհի ԷԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ*

*Գեղարուեստական ճոխ բաժին, ժամանակցութեամբ* փարիզահայ ՍԻՓԱՆ երգչախումբի, ղեկավարութեամբ *Ընկ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆի*

*Խմբական սիրուած երգեր*

Օր. Հռիփ. Քնեազեան եւ Պ. Գր. Մէթէրեան (*մեներգ*)

*Հայկական շուրջպարեր, լեռնական եւ կովկասեան պարեր «Սիփան»ի կողմէ, ժամանակցութեամբ Թառիսթ ՌՈՒԲԷՆի:*

**ՄՈՒՏՔ 5 ՖՐԱՆՔ**

Հաղ. միջոց.— Pont de Sèvres մէթրոյէն առնել Թիւ *1* Թրամ. եւ իջնել Ancien Mairie. կառ. ՍԷն Լազարէն կառախումբ իջնել Chaville-R. D.

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Հ. Յ. Դ. ՍԷՆ ԺԻՒԼԻԷՆ ԱՆ ՍԷՆԹ ԱԼՊԱՆԻ «ՎՐԷԺ» ԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ*

*Այսօր Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ*

*Ֆլավիագ, Իւզին ալ Կոշէի ընդարձակ ծառաստանին մէջ*

*Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն, նուագ եւայլն:*

*Կը հրաւիրուին Փրիվայի եւ շրջաններու հայրենակիցները:*

*Մուտքը ազատ է:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Մարսէյլ — Փրատոյի Ս. Թարգմանչաց Մայր — Եկեղեցիի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ Սրբոց Թարգմանչաց Սահակի եւ Մեսրոպի տօնին առիթով այսօր Կիրակի հանդիսաւոր Ս. Պատարագ պիտի մատուցուի եւ Հոգեհանգիստի մասնաւոր պաշտօն պիտի կատարուի Եկեղեցիին հիմնադիր-բարերար Պ. Վ. Խօրասանճեանի ողբացեալ կողակցին յիշատակին:*

*Արարողութեանց պիտի նախագահէ եւ քարոզէ Հալէպի Առաջնորդ* ՏԵՐ. Տ. ԱՐՏԱՒԱԶԴ ԱՐՔ. ՍԻՒՐՄԷԵԱՆ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնեմ Պ. Պէնոար Վահէի (Պէօրէքճեան), ֆրանսական եւ միջազգային անհատական իրաւաբանութեան մասնագէտ*, 94 Rue St. Lazare, Paris, *որ յաջողեցաւ շնորհիւ իր տաղանդին եւ կամքին, լուծել ողբացեալ ամուսնոյս Ռեթէոսեան Միքիճանի ժառանգութեան դատը: Ամուսինս որ մեռաւ* 1917*ին Իզմիրի մէջ, աւանդ գումար մը ունէր Փարիզի եւրոպական մէկ հաստատութեան մէջ: Ամբողջ* 15 *տարի, բազմաթիւ իրաւագէտներ չկրցան կարգադրել, բայց Պ. Վահէ ինծի համար ճշմարիտ նախախնամութիւն մը դարձաւ: Ահա թէ ինչու պարտք կը զգամ հրապարակաւ յայտնել իմ երախտագիտութիւնս: Իրեն անծանօթ մըն էի, բայց քրոջ մը պէս վերաբերուեցաւ հետս: Բալասան դրաւ սրտիս մէջ, որ խոցոտեր էր եղերական դէպքերու պատճառով: Ես իր գովեստը պիտի ընեմ ամէն տեղ եւ զինք պիտի օրհնեմ կեանքիս տեւողութեանը ընթացքին:*

*Կը յուսամ որ Պ. Վահէ պիտի ներէ հրապարակային այս արտայայտութեանս, որովհետեւ ոչ մէկ բան կրնայ արգիլել այս ճիչը որ կը բխի սրտէս ինքնաբերաբար:*

*ԹԱԳՈՒՀԻ ՌԷԹԷՈՍԵԱՆ*
7A Rue de la Darse, Marseille




**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)  17, Rue Damesme, PARIS (13e)**

